

Նկ. Ալ. Գրիգորյանի

# Հոկտեմբեր

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Մենք դպրոց ենք գնում.
Մեր դպրոցի ճամփան
Հոկտեմբերն է զուգել վառ լույսերով,
Որ մենք աճենք ամուր,
Որ մեր սիրտը ծփա
Երազներով վսեմ և հույսերով։

Մեր մայրենի լեզվով
Դասագրքերը մեր
Հոկտեմբերն է գրել պայծառ այդքան,
Որ ստանանք ուսում,
Որ մենք խելոք լինենք,
Որ կառուցենք երգով մեր ապագան։

Իսկ դպրոցից հետո
Կյանքում այնքան ուղի
Հոկտեմբերն է մեր դեմ բացել կրկին,
Որ մենք ուր էլ լինենք,
Որպես մարտիկ, բանվոր,
Մեզ ուղեկցի նրա լույսը ոսկի։

Նայիր, ալ է այնպես
Քարտեզն հայրենիքի,
Հոկտեմբերն է գծել այդպես հստակ,
Որ մենք շնչենք ազատ,
Որ կառուցենք խինդով,
Հավերժ ազատ ապրենք արևի տակ։

# ՓՆՏՐՈՒՄ ԷԻ ՀԱՅՐԻԿԻՍ

Նկ. ԱՐԱ ԲԵՔԱՐՅԱՆԻ

*ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ*



1920 թվականի աշունն էր: Ապրում էինք Վաղարշապատում: Այգիներն արդեն թաղել էինք, հնձված դաշտերն ամայացել, ցողունները դեղնել էին: Արագածից եկող սառը քամիները անարգել պտույտներ էին գործում նեղլիկ փողոցներում, կրնկահան անում բաց թողնված դռները, ջարդում պատուհանների ապակիները:

Ցուրտ էր: Քաղցած էինք:

— Գնա՛, որդի՛,— ասաց մայրս,— գնա՛, հեռացի՛ր այս տեղերից: Դու արդեն մեծ ես:

Մայրս ինձ հեռացնում էր վտանգից, որը ամեն վայրկյան կարող էր վրա հասնել: Հայրս փախել էր բանտից:

«Շո՛ւտ արեք,— լուր էր ուղարկել բանտից Աշոտ Նիկողոսյանը,— տղային հեռացրեք, ուզում են բանտարկել, որպես պատանդ պահել, որպեսզի հայրը գա, հանձնվի»:

— Գնա՛, որդի՛, մի՛ ուշանա,— ստիպում էր մայրս,— գնա՛, մի՛ վախենա: Քա՛ջ եղիր: Հայրդ ճիշտ է անում, դու էլ նրա որդին ես, գնա՛:

Բայց ո՞ւր գնայի: Տասը տարեկան էի և տնից դեռ դուրս չէի եկել, ո՛չ փող ունեի, ո՛չ հագուստ:

— Գնանք, ես էլ եմ գալիս,— ասաց դպրոցական ընկերս՝ Ֆիլիպ Նավասարդյանը: Մենք նրան քնքշաբար Ֆիլյա էինք կանչում: Ինձանից ավելի բարձրահասակ էր, թխադեմ ու գեղեցիկ: Մեղմ, թախծոտ աչքեր ուներ: Լավ գիտեր ռուսերենը, կարդում էր ֆրանսերեն:

Առավոտյան, երբ լույսը նոր էր բացվել, մենք ճամփա ընկանք: Ոտքով էինք գնում, գնում էինք Երևան: Շուտ-շուտ ետ էինք նայում: Ճանապարհին բարձրանում էին բարդիները, կարծես գալիս, համախմբվում էին հորիզոնում և ծածկում վանքերի գմբեթները: Մենք առաջին անգամ հանգստացանք օտար վայրում: Փարաքարի ջրբաղացներում: Իսկ իրիկնապահին անցանք Դալմեքը և մտանք Երևան: Զանգվի հին կամուրջի մոտ, Սարդարի այգու երկաթե աստիճանների վրա, ծանոթացանք մեր տարիքի մի տղայի հետ: Անունը Հումբերտ էր: Նա մեզ իրենց տուն տարավ: Մայրն ընդունեց մեզ, լողացրեց, կերակրեց: Մենք գիշերեցինք Հումբերտի հետ՝ նույն անկողնում: Գիշերն իմացանք, որ Հումբերտը Խենթի թոռն է:

— Կարմիր բանակը գալիս է,— ասաց մեզ Հումբերտը,— վաղը գնանք Քանաքեռ դիմավորելու, հայրդ երևի նրանց մեջ կլինի: Իմ հայրն էլ է գալու:

— Եթե հայրիկիդ գտնես, մե՛ր տուն բեր,— ասաց Հումբերտի մայրը,— կգույշ կլինենք:

Մենք դուրս եկանք Աստաֆյան փողոց և քայլեցինք դեպի Քանաքեռ: Քաղաքը կարծես դատարկ լի-

# ՀՆԳԱԹԵՎ ԱՍՏՂԵՐ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. ԱԼ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Կան հեռու աստղեր,
Կան մոտիկ աստղեր,
Երկնքից կախված
Ոսկեղեն հասկեր։
Բայց ամենավառ
Աստղերն աշխարհում
Մեզ ընկեր դարձան
Հզոր արշավում։
Մեր բոսորագույն
Դրոշին նրանք
Շողացին որպես
Հավատի կրակ։
Ու պսպղացին
Օրերում մթին
Կարմիր զինվորի
Հպարտ ճակատին։
Աշտարակներին
Բարձրացան մեր հին,
Փառքի սյուներին
Ու կամարներին։
Գերբերը մեր նոր
Գծեցինք հասկով,
Օրերը մեր նոր՝
Հնգաթև աստղով։
Եվ հավաքվեցինք,
Եվ հավաքվեցինք
Երազով ամեն
Երկրի ու ազգի
Լույս թևերի տակ
Կրեմլյան աստղի։

ներ։ Մի խումբ մարդիկ կանգնած Պլանի գլխին չգիտեին ինչ անեն՝ դիմավորե՞ն եկող բանակին, թե՞ հեռանան նրանից։ Քաղաքը սպասում էր բանակի մուտքին։

Մենք երեք ընկերներով գնում էինք նրան ընդառաջ։ Մենք գիտեինք, որ այս բանակի հետ գալիս էին մեր հայրերը։

— Հայրդ նրանց հետ է,— ասում էր Ֆիլյան, իսկ Հումբերտը հաստատում էր.

— Իմ հայրն էլ է գալիս։ Նրանք միասին են։

Երկրորդ տարին էր հայրիկիս չէի տեսել, ինձ թվում էր, թե ես նրան չեմ ճանաչի, բայց գիտեի, որ միջահասակ է, փոքր-ինչ շիկավուն։

— Ես լավ եմ հիշում քեռի Գևորգին,— համոզում էր ինձ Ֆիլյան, անմիջապես կճանաչեմ։

Բարձրանում էինք Քանաքեռ և մեզ թվում էր, թե վերջ չի լինելու այդ ճամփին։ Գնում էինք, բայց Քանաքեռ չհասանք։ Դիմացի բլուրներից փոշի բարձրացավ։

— Գալի՜ս են,— ասաց Հումբերտը։ Տարածվող փոշու միջից քիչ հետո երևաց հեծելազորը։ Սպիտակ ու շեկ ձիերը կանոնավոր կորաշարով իջնում էին Քանաքեռի բարձունքից։

Ամայի, չոր բլուրներում, հեռավոր արձագանքի նման, դոփում էին ձիերի սմբակները։ Բանակը մոտեցավ։ Փոշոտ էին ձիերն ու հեծյալները, հոգնած ու լարված դեմքերով։ Մեզ արդեն ծանոթ էին ձիերի խրխինջները, զենք ու կրակի ծանրությունը, սվինների փայլը, զինվորական կոշիկների վաքսի հոտը, հրանոթների բաց երախները, վառոդի մուրը։

Մեզ դուր էր գալիս զինված բանակի մուտքը։ Մենք վախ ու տագնապ չունեինք։ Մենք փնտրում էինք մեր ծնողներին, նայում հոգնած ձիերին և չէինք զգում, թե ինչ արագությամբ էինք ետ-առաջ սլանում։ Ես հայրիկիս էի փնտրում։ Հանկարծ մի ձիավոր դուրս եկավ շարքից, մոտեցավ մեզ, կանչեց Ֆիլյային, բարձրացրեց ու դրեց իր ձիու թամբին։ Ֆիլյան մեզ ձեռքով հրաժեշտ տվեց ու գնաց։ Քիչ հետո Հումբերտին էլ վերցրին հրետանավորները, իսկ ինձ վերցնող չկար։ Ես փնտրում էի հայրիկիս՝ ետ-առաջ էի վազում և չէի հոգնում։

Մենք Կարմիր բանակի հետ Քանաքեռից Երևան էինք իջնում։

Երեխաներ էինք, ինչ իմանայինք, որ ականատես էինք լինում մի մեծ սկզբնավորման, որը հետո պետք է կոչվեր Հայաստանի Խորհրդային Սոցիալիստական Հանրապետություն և մենք նրա առաջին սերունդը պետք է լինեինք։ Ես վազում էի և չէի ցանկանում ետ ընկնել։ Եվ ահա մի ձիավոր կանչում է ինձ։ Մարմինս փշաքաղվեց, ոտքերս կանգ առան։ Նա ինձ թռցրեց դրեց իր ձիու թամբին, և մենք Աստաֆյան փողոցով ցած իջանք։

# Ստեփան Զալաբյան

(ծննդյան 80-ամյակի առթիվ)

ՎԱՐԴԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Աստրախանցի Հովհաննես Զալաբյանը, երկար ժամանակ իր երիտասարդ որդուց՝ կարմիր հրամանատար Ստեփանից լուր չունենալուց հետո, 1922 թ. մայիսի 26-ին, Ղարաքիլիսայում (այժմ Կիրովական) գտնվող Հայկական բրիգադայի շտաբից ստանում է մի հեռագիր.

«Ստեփան Հովհաննեսի Զալաբյանը 1921 թ. հունիսի 18-ին Դարալագյազի շրջանում դաշնակների դեմ մղած կռվի ժամանակ, գերությունից խուսափելու համար ինքնասպանություն է գործել»:

Ծատ չանցած Աստրախան ուղարկվեցին Ստեփանի անձնական իրերն ու փաստաթղթերը, որոնց մեջ էին նաև նրա վերջին լուսանկարն ու կուսակցական տոմսը:

Ստեփանի կորուստը ծանր հարված էր ոչ միայն Զալաբյանների ընտանիքի, այլև նրա համաքաղաքացիների համար. զոհվել էր Աստրախանում սովետական կարգերի հաղթանակի համար մղված պայքարում աչքի ընկած գործիչներից մեկը, քաղաքի կուսակցական կազմակերպության նախկին քարտուղարը:

Այդ ժամանակից անցել են շատ տարիներ, բայց աստրախանցիները չեն մոռացել Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի ու նրա նվաճումների ամրապնդման պայքարին իր կյանքը նվիրաբերած Ստեփան Զալաբյանին: Երիտասարդ հերոսի հիշատակը հավերժացնելու համար Աստրախան քաղաքի կենտրոնում գտնվող փողոցներից մեկին տրված է Ստեփան Զալաբյանի անունը, քաղաքի գավառագիտական և Ս. Մ. Կիրովի անվան թանգարաններում Ծահումյանի, Կիրովի և Աթարբեկյանի նկարների հետ փակցված է նաև Զալաբյանի նկարը:

Ս. Զալաբյանը ծնվել է Աստրախանի հայկական թաղամասում: Նրա չքավոր ծնողները միջոցներ չեն խնայել իրենց որդու կրթության համար: Միջնակարգ կրթությունը հարազատ քաղաքում ստանալուց հետո, Ստեփանը մեկնում է Մոսկվա և ընդունվում Լազարյան ճեմարան: Սակայն պատերազմը թույլ չի տալիս Ստեփանին ավարտելու ճեմարանը: 1916 թ. նա կանչվում է բանակ և ուղարկվում զինվորական ուսումնարան: Պրապորշչիկի աստիճան ստանալով, Զալաբյանը ծառայության է անցնում Աստրախանում գտնվող 156-րդ գընդում: Արդեն այդ ժամանակ Զալաբյանը հարում էր բոլշևիկներին: Նա հեղափոխական ակտիվ գործունեություն է ծավալում 156-րդ գնդում: Զալաբյանն առանձնապես ակտիվ մասնակցություն է ունենում 1917 թ. գարնան վերջերին Աստրախանում սկսված զինվորական հուզումներին: Այդ ժամանակ զինվորները ստեղծել էին իրենց ռազմա-քաղաքական կոմիտեն, որը փաստորեն իր ձեռքն էր վերցրել գնդի ղեկավարությունը: Զալաբյանն ընտրվում է այդ կոմիտեի անդամ, բայց շուտով շարժումը ճնշվում է, իսկ ղեկավարները ձերբակալվում են: Ձերբակալվում և բանտարկվում է նաև Զալաբյանը: Նրան ուղարկում են ճակատի առաջավոր գիծը: Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակ Ստեփանը գտնվում էր ճակատում: Զինվորները նրան ընտրում են 2-րդ կովկասյան կորպուսի կոմիտեի նախագահ: Վերադառնալով Աստրախան, նա նշանակվում է քաղաքի ֆինանսական կոմիտեի կոլեգիայի անդամ և մեծ աշխատանք կատարում քաղաքի տնտեսական-ֆինանսական վիճակի բարելավման ուղղությամբ: Մեծ հեղինակություն վայելելով Աստրախանի բոլշևիկների շրջանում, Զալաբյանը շուտով ընտրվում է կուսակցության Աստրախանի քաղաքային կոմիտեի քարտուղար:

Ծանր օրեր էր ապրում Աստրախանը:

1919 թ. սկզբներին քաղաքում դրությունն ավելի է լրջանում, քաղաքին արևելքից սպառնում էին Կոլչակի զորքերը, Կասպից ծովից՝ անգլիական ռազմանավերը, իսկ քաղաքի ծայրամասերը գտնվում էին կուլակության ձեռքում:

Ամեն օր Աստրախան էին գալիս արևմուտքից նահանջող 11-րդ բանակի զորամասերը: Անհրաժեշտ էր ստեղծել նոր, կազմակերպված և մարտունակ բանակ, որը հնարավորություն ունենար Դենիկինից ազատագրելու Հյուսիսային Կովկասը, օժանդակություն ցույց տար Անդրկովկասի ժողովուրդներին:

Ահա ' այս ամենը կատարելու համար Լենինի ցուցումով Աստրախանում հիմնվում է ժամանակավոր ռազմա-հեղափոխական կոմիտե՝ Ս. Մ. Կիրովի գլխավորությամբ: Լենինը հրաման է տալիս. «Աստրախանը պաշտպանել մինչև վերջ»: Որպես պատասխան առաջնորդի կոչին, Կիրովը Աստրախանի կոմունիստների կողմից հայտնում է. «Քանի Աստրախանի երկրամասում կա գոնե մեկ կոմունիստ, Վոլգայի գետաբերանը եղել է, կա և կլինի սովետական»:

Այս օրերին Ստեփան Զալաբյանը ստանձնում է նոր պաշտոն. դառնում է Կիրովի անձնական քարտուղարը և 11-րդ

# ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ

(ծննդյան 50-ամյակի առթիվ)

Երբ նայում ես Գրիգոր Խանջյանի գեղանկարներին, մանավանդ նկարազարդած գրքերին, ակամա մտաբերում ես նրանց, ովքեր դարեր առաջ մագաղաթյա մատյաններ էին ծաղկում Արևմտահայաստանի Երզնկա քաղաքում:

Գրիգոր Խանջյանը ծագումով է միայն երզնկացի, նա այդ քաղաքը չի էլ տեսել, բայց խորունկ կապ կա նկարչի արվեստի ու մեր մագաղաթների հանճարեղ ծաղկողների միջև:

Մանուկ Գրիգորը հինգ տարեկան հասակում հաճախում էր Երևանի Աջօ մանկապարտեզը: Մանկապարտեզի անունը կազմված էր արև, ջուր, օդ բառերի սկզբնատառերից: Գրիգորը մյուս երեխաներից տարբերվում էր նրանով, որ արևից, ջրից, օդից ավելի սիրում էր նկարել: Նա նկարում էր իրենց փողոցի քարերին, մանկապարտեզի բակն ու ձի հեծած Բուդյոնուն:

Այդ նկարները չեն պահպանվել, «Պիոներ» ամսագիրը այն ժամանակ չէր տպագրում փոքրիկ նկարիչների աշխատանքները: Համենայն դեպս Շահումյանի անվան դպրոցում, եթե ոմանք հայտնի էին որպես բանաստեղծ, ֆուտբոլիստ կամ երաժիշտ, ապա Խանջյան Գրիշան նկարչի համբավ ուներ:

Պատանի նկարչի նկարազարդած պատի թերթերն ու ալբոմները քաղաքային մրցույթներում մրցանակներ էին շահում: Ահա թե ինչու, երբ նա ավարտեց յոթնամյա դպրոցը, ոչ ոք չէր կասկածում, որ Գրիշան գնալու է նկարչական ուսումնարան (այդ ժամանակ Երևանում դեռևս գեղարվեստի ինստիտուտ չկար):

Գրիգոր Խանջյանը գերազանց ավարտեց նկարչական ուսումնարանը, ապա Երևանի գեղարվեստա-թատերական ինստիտուտը: 1952 թվականին «Անուշ» պոեմի նրա ձևավորումը գրքի համամիութենական ցուցահանդեսում արժանացավ երկրորդ կարգի դիպլոմի: Այնուհետև իր երեսունամյա բեղմնավոր ստեղծագործական կյանքի ընթացքում Գրիգոր Խանջյանը շատ ավելի բարձր մրցանակների ու տիտղոսների է արժանացել, սակայն առաջին մրցանակը, առաջին գնահատությունը մնացել է անմոռանալը:

Հիշո՞ւմ եք արդյոք այն անկրկնելի պահերը, երբ առաջին անգամ ձեր ձեռքն եք առել «Անուշը», «Սասունցի Դավիթը», «Լավվարի որսը», «Գիքորը», «Լոռեցի Սաքոն», «Մարդու ճակատագիրը», «Վերք Հայաստանին», «Սասունցիների պարը»: Անկարելի է, որ հեղինակային տողերից ոչ պակաս ձեզ վրա ազդեցություն թողած չլինեն գրքի նկարազարդումները: Չմեղանչելով գրական մեծությունների առջև, վստահ կարելի է ասել, որ այդ գրքերը երկու հեղինակ ունեն՝ Հովհաննես Թումանյան և Գրիգոր Խանջյան, Խաչատուր Աբովյան և Գրիգոր Խանջյան, Միխայիլ Շոլոխով և Գրիգոր Խանջյան: Ինչպես, որ մեր մագաղաթները թերթելիս, մեր պատմիչների, փիլիսոփաների անունների կողքին, նույնպիսի երկյուղածությամբ հիշում ենք և նույնպիսի պատկառանքով արտասանում այդ մատյանները ծաղկողների անունները:

Գրիգոր Խանջյանը իր հմուտ տաղանդի ու գրական երկի նուրբ զգացողության շնորհիվ, այսօր շարունակողներից մեկն է մեր հանճարեղ մանրանկարչության ավանդույթների, զարգացնողը գրքի

---

բանակի քաղբաժնի հրահանգիչը:

Շնորհիվ ռազմա-հեղափոխական կոմիտեի ձեռք առած միջոցառումների, 1919 թ. գարնանը 11-րդ բանակն արդեն համալրված էր, ամրապնդված և դարձել էր մի ահեղ ուժ Դենիկինի զորքերի դեմ պայքարելու համար: 1919 թ. սեպտեմբերի 12-ին Չալաբյանը նշանակվում է 11-րդ բանակի 7-րդ հեծյալ դիվիզիայի շտաբի կոմիսար: Այդ դիվիզիան շուտով մտնում է մարտական գործողությունների մեջ՝ պաշտպանելով Աստրախանը Չոռնի-Յար քաղաքի ուղղությամբ: Ստեփանը մասնակցում է նաև Ցարիցինի, Ստավրոպոլի ու Վլադիկավկազի ազատագրմանը:

1920 թ. սեպտեմբերին նա նշանակվում է ադրբեջանական հրաձգային բրիգադայի երկրորդ գնդի հրամանատար և իր գնդի հետ ուղարկվում պարսկական ճակատ՝ Ռեշտ-Մենջիլի շրջանը: 1921 թ. մարտի 27-ին նա ուղարկվում է Հայաստան՝ մասնակցելու դաշնակների խռովության ճնշմանը: Հունիսի 18-ին նա ընկնում է շրջապատման մեջ և դիմադրելով մինչև վերջ, գերադասում է մահը գերությունից, վերջին գնդակն ուղղում է իր սրտին:



«Գառնեցի աղջիկը»

ձևավորման ու նկարազարդման մեծ, հինավուրց արվեստի:

Իր ձևավորած շատ գրքերի համար Խանջյանը բազմաթիվ միութենական ու համաշխարհային մրցանակներ է ստացել: Այդ ասպարեզում նրա ամենաակնառու նվաճումը Պարույր Սևակի «Անլռելի զանգակատուն» պոեմի նկարազարդումն է: Գրաֆիկական այս ստեղծագործությունը լիարժեք հնչում է նաև գրական երկից դուրս և իր կատարման թափով, հոգեբանական խորությամբ ավելի կատարյալ ու հնչեղ է դարձնում բանաստեղծի խոսքը: Բազմաթիվ հայ նկարիչներ են անդրադարձել մեծ Կոմիտասի կերպարին, նրանք գունանկարի էմոցիոնալ ուժի օգնությամբ պատկերել են Կոմիտասի կյանքի այս կամ այն պահը միայն: Առաջին անգամ Գրիգոր Խանջյանը գրաֆիկայի սուղ միջոցներով ներկայացրեց հանճարեղ երգահանի կյանքի բոլոր նշանակալից ժամանակները, այն էլ այնպիսի ժամանակներ, որոնք ընդգրկում են արարում և կոտորած, սեր ու խելագարություն: Դժվար է ասել, Պարույր Սևակի պոեմի կատարելությունը օգնե՞լ է նկարչին, թե՞ իր անթերիությամբ կաշկանդել, բայց որ պոեմի ձևավորումը համահնչուն է գեղարվեստական երկի թափին ու ասելիքին, անառարկելի է:

Ստեղծագործական կյանքի երեսուն լարված, և ոչ միշտ հարթ տարիները ցույց տվեցին, որ Գրիգոր Խանջյանը մեկն է մեր ամենաժողովրդական նկարիչներից, գրքի նրա սովորական ձևավորումներից մինչև նշանավոր կտավները, բացահայտում են ժողովրդին ծառայելու, ժողովրդի հետ լինելու նկարչի անկեղծ ու ազնիվ մղումը: Անշուշտ, զարմանալի չէ, որ հայրենի բնապատկերները ու կենցաղը մեծ տեղ են գրավում նկարչի ստեղծագործության մեջ: Սակայն, նա հանգիստ չի կարողանում դիտել Արագած լեռան անկրկնելի գույները ու լավաշ թխող հայ մամիկի աչքերը, երբ աշխարհի ինչ-որ անկյունում դեռ հոսում է անմեղ մարդկանց արյունն ու գնդակահարվում են ամենանվիրական երազանքները: Նկարչի հայրը չէր կարող որդուն չըպատմել այն ստրկական վիճակի մասին, որից օգտըվելով տարիներ առաջ ոսոխը կոտորում էր իրենց, առևանգում իրենց ունեցվածքը իրենց իսկ բնօրրանում: Ահա թե ինչու աքսոր, հարստահարում, իրավազրկություն տեսած երզնկացի Սեպուհի որդին անտարբեր չի մնում այն ամեն անիրավությունների նկատմամբ, ինչ այսօր կատարվում է աշխարհում: Նկարչի «...Եվ այդ ամենը մեր օրերում» նկարաշարը ստեղծվել է համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, սակայն երևում է, որ այն նկարչի երկար տարիների խոհերի, մտորումների ու ապրումների արդյունքն է: Իր «Եվ այդ ամենը մեր օրերում» նկարաշարով հեղինակը ընդվզում է աշխարհում այսօր հանդիպող բռնության, իրավազրկման ու ճնշման դեմ: Ոչ այնքան վաղուց



Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» գրքի նկարազարդումներից



«Մենչաղ»

ստեղծված այս նկարաշարը արդեն ցուցադրվել է մեր Միության ամենատարբեր վայրերում, սոցիալիստական բազմաթիվ երկրներում, Իտալիայում, հեռավոր Մեքսիկայում և այլուր: Տարբեր ազգության, աշխարհայացքի տեր դիտողների թողած ջերմ ու սրտառուչ կարծիքները վկայում են, որ նրանք մտահոգվել են նույն մտահոգություններով: Դա նկարիչ Խանջյանի ամենամեծ հաղթանակն է, նա չի հանդուրժում, որ մարդիկ անտարբեր մնան իրենց շուրջը կատարվող իրադարձությունների նկատմամբ:

ՀՍՍՀ ժողովրդական նկարիչ, ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր Գրիգոր Խանջյանը ՀՍՍՀ գերագույն սովետի դեպուտատ է, ՀՍՍՀ գերագույն սովետի նախագահության անդամ, ՍՍՀՄ և ՀՍՍՀ նկարիչների միությունների վարչության անդամ, Լատինական Ամերիկայի երկրների հետ մշակութային կապերի վարչության պրեզիդենտ, հուշարձանների պահպանության կոմիտեի վարչության անդամ; պետական պատմական թանգարանի գիտխորհրդի անդամ, «Սովետական արվեստ» ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ: Թվարկված և չթվարկված բազմաթիվ հասարակական պարտականություններով ծանրաբեռնված արվեստագետը երկար տարիներ է, ինչ հանդիսանում է նաև «Պիոներ» ու «Ծիծեռնակ» ամսագրերի խմբագրական կոլեգիայի եռանդուն անդամը: Նա շատ է նպաստում, որ մեր մանկական ամսագրերը ունենան գեղարվեստական բարձրաճաշակ ձևավորում, որպեսզի ճշմարիտ արվեստի սկզբունքներով դաստիարակվեն մեր ընթերցողները: Թեև մեր ընթերցողները հաճախ չեն հանդիպում նրա անվանը իրենց ամսագրերի էջերում, սակայն թող գիտենան, որ Խանջյանը մանուկների իսկական բարեկամն է և նրա բարի խորհուրդների ու արժեքավոր դիտողությունների ազդեցությունը կա մեր զույգ ամսագրերի ամեն մի համարում:

— Մինչև հիմա ես իմ ժողովրդից ավելի շատ ստացել եմ, քան տվել,— իր հիսնամյակի նախօրեին, համեստորեն խոստովանեց նա: Այս նշանակում է, որ նա լի է ստեղծագործական անսպառ եռանդով և նոր անհամար մտահղացումներով:



«Իսպանիա» շարքից

Սպասենք դրանց իրականացմանը և մաղթենք, որ արվեստագետի կյանքի երկրորդ հիսնամյակը առաջինի նման շարունակի նրան տանել վերընթաց ճանապարհով և որ նա իր արվեստի երկրպագուներին ուրախացնի նորանոր նշանակալից գործերով:

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ



# ԱՄՈՒՐ, ԻՆՉՊԵՍ ՈՐՁԱՔԱՐԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Խոսքս որսորդների մասին է: Ես ավելի դիմացկուն մարդիկ չեմ տեսել, քան որսորդներն են: Մեքս հունվարի պարզկա գիշերին Ուրծի լեռներում մինչև լուսանալն անշարժ մնացել եմ ժայռի դարավանդին նստած (եթե շարժվեի՝ պիտի անդունդը գլորվեի), ոտքերս ցրտահարվել են, բայց նույնիսկ հարբուխ չեմ ընկել: Մեր մարմինը անհաշիվ փորձանքների ենթարկելով, ամրացնում ենք, դարձնում ենք քար, որձաքար...

Ահա դեմս կանգնած է մեկնից մեկը՝ անտաշ ու ամուր որձաքարի մի բեկոր՝ որսկան Շաքարը: Իննսունին մոտ է, բայց ծեր վարազի նման փնչացնելով ճեղքում է ծնկնահար ձյունը: Ուսից, «խուրջին արած» երկու փարսաղ կա կախված, մեկը թիկունքն է հարում, մյուսը՝ կուրծքը: Կանգ է առնում, մեծ փափախը հանում՝ գլխից գոլորշի է բարձրանում: Փափախով սրբում է քրտինքն ու անհամբեր սպասում է, որ իր որդին՝ Ժորժիկը հավասարվի իրեն: Որդու իգիթ ժամանակն է, արյունը եռում է երակներում, բայց դե նա ո՞ւր, իր հայրն ո՞ւր: Հետը շատ անգամ է որսի գնացել, սրա մարմինն էլ է ամրացել ծերպերը մագլցելուց, կարկուտի տակ, խոտ հնձելիս, գերան կրելիս, վար անելիս: Ամրացել է, բայց դեռ որձաքար չի դարձել...

Հայրը խճճված հոնքերի տակից հեգնանքով նայում է որդուն.

— Աղա՛, քու տարիքին էս ձորիցը ես մեր Նարգիզ կովի չափ պախրա եմ շալակած վեր տարել... Էդ ի՞նչ է էդ լղար գառը, որ տակին կուչ ես եկել...

«Լղար գառը» Ժորժիկի շալակին բարձած որձ այծյամն է: Որդին վիրավորվում է. «Լա՞վ լղար գառն է...»

Հայրը թավ բեղերի տակ փառփառ ծիծաղում է.

— Վե՛ր կաց, վե՛ր, մինչև Արփավուտի քարը հասնենք՝ կմըթնի:

Ու շարունակում էր տանջալից վերելքը:

Արփավուտի քա՜րը... էն ուր է՜... Հրե՜ վերին ամպերի մեջ ցցված: Իսկ իրենք դեռ Հաղարծնի ձորում են, վանքերից մի քիչ վերև: Պիտի հասնեն Արփավուտի մեծ ժայռին, նրա մոտի թամբով ջուր գան լեռան մյուս երեսը, որ իջնեն մեր գյուղի գոմահանդը: Հաղարծնի ձորից դեպի՝ մեր գյուղը տանող ուրիշ ճամփա չկա: Խոր ձյուն է եկել, քամին ճամփեքն ու կածանները հավասարեցրել է, դե ոտքերիդ ուժ տուր, վիզդ ձգիր:

— Ապի՛, յանի էսքանն ու՞ր ենք տանում, արի երկուսը- ձնի մեջ թաղենք,— զգուշությամբ առաջարկում է որդին:

— Փի է՜է... աղա՛, բա բոյիցդ հմանչում չե՞ս... Աղա՛, բա մարդ էլ իր որսը չոլում կթողնի՞...

— Էգուց գոմերիցն էշ կբերենք, վրեն կգցենք կտանենք:

— Էգո՜ւց... Բա ուրեմն էստեղ սոված գելերն էնքան ախմախ են, որ չե՞ն գտնի, չե՞ն հպնի քու պահածը... Վայ թե խնայեն... կարող է և վախենան, թե ուրիշի թողած ամանաթին ո՞նց ձեռք տանք...

Ու էլի ծիծաղում է փառ-փառ, անհոգ, կարծես ոչ թե ձյունը ճեղքելով դեպի սարն է գնում, այլ՝ ձին հեծած Համպաչիման՝ հարսանիքի...

Բայց մի տեղ Ժորժիկը այնպես խրվեց իր բեռի ծանրությունից, որ էլ դուրս գալու հնար չուներ:

Հայրը ազատ ձեռքով բռնեց նրա ուսը, վեր քաշեց, ձյունը վրայից թափ տվեց.

— Թվանքդ դե՛սը տուր...

Իր և որդու հրացանները միասին աջ ուսը գցեց, իսկ ձախից վարազներն էին կախված, ոտքերն իրար կապած, «խուրջին արած»:

— Արի՛, ոտնատեղերո՛վս արի...

Ու փնչալով շարունակեց վերելքը:

Արփավուտի մեծ ժայռի ստորոտից սկսած՝ այնպիսի մի դարիվեր է սկսվում, որ անթամբ հեծյալը ինչքան ուզում է ձիու վրա մնալ, չի հաջողվում, սողում է դեպի ետ, մի կերպ գավակից կպած մնում, մինչև որ ձին դուրս գա լեռնաթամբը: Իսկ հիմա ձյունը մարդկանց գոտկատեղին է հասնում:

Ժորժիկը դարձյալ խրվեց: Այն ժամանակ հայրը ետ դարձավ, վրդովված՝ թափ տվեց, նրա ուսի այծյամը պոկեց, մի ձեռքով շըպըրտեց իր թիկունքը՝ հրացանների ծայրին գցեց ու զայրացած գոչեց.

— Ի՜հ, քեզ մարդ ասողի... դե արի, գոնե քե՛զ տեղ հասցրու:

Եվ վարազներն ու եղնիկը, երկու հրացանի, փամփուշտակալների ու մեջքից կախված մի տոպրակ կարտոֆիլի ծանրությունից, և որդու «անպետքությունից» սրտնեղած, այնպես թափով գնաց լեռն ի վեր, որ կանգ առավ միայն Արփավուտի լեռնաթամբին:

Արեգակը մայր էր մտել, սարից փչող սառն ձնաբուքը կտրում-անցնում էր որսորդների մարմինը, բայց որսկան Շաքարի համար շոգ էր, քանի որ ներսից եռում էր շոգեքարշի նման և քըրտինքի առվակներ էին հոսում հագուստի տակ...

Բնությունից կտրված և քաղաքում փափուկ կյանք վարող իմ պատանի ընթերցողնե՜ր: Հիմա հասկացա՞ք, թե ինչու որսկան Շաքարը գաղափար չուներ ոչ գըրիպի և ոչ էլ նույնիսկ հարբուխի մասին:

Է՛հ, ինչ եմ ասում, որձաքարը հիվանդանո՞ւմ է, որ նա հիվանդանար...

## ԶՐՈՒՅՑ

*ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ*

Բարդու ճյուղին
Երեկվանից
Կծկվել է
Մի դեղձանիկ:

Աշունը չեկ
Միանգամից
Բերեց պաղ մեգ
Ու ցուրտ քամի:

Լռեց փոքրիկ
Երգիչը մեր.
Էլ ի՜նչ համերգ
Ու ի՜նչ երգեր...

— Չիրի՜կ, չի՜կ-չի՜կ,
Էլ չի՜ք, էլ չի՜ք...

Ճնճղուկը գորշ
Կարեկցանքով
Ծտվտում է
Միշտ նույն հանգով.
— Ճվի՜, ճվի՜—
Չվի՜ր, չվի՜ր...

Կռունկները՝
Կռո՜ւ-կռո՜ւ,
Թռան հարավ,
Հեռո՜ւ-հեռո՜ւ:

Ճվի՜, ճվի՜—
Ես չեմ չվի...



# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԻՆՈԱՐՎԵՍՏԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԸ

*ԳԱՐԵԳԻՆ ԶԱՔՈՅԱՆ*

1923 թվական. դեռևս փոքր, գետնատարած գավառային քաղաք է Երևանը՝ Սովետական Հայաստանի մայրաքաղաքը: Բայց աշխարհի բոլոր ծայրերից մայր հայրենիք են վերադառնում բանաստեղծներ, երաժիշտներ, ճարտարապետներ, նկարիչներ, գիտնականներ, դերասաններ: Նորաստեղծ մայրաքաղաքի օդը հագեցած է ստեղծագործական եռանդով և ռոմանտիկայով:

1923-ի ապրիլ ամիս: Հայկական կինոարվեստի երախտավոր Դանիել Դզնունին զեկուցագիր է ներկայացնում Հայաստանի Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ Ս. Լուկաշինին (Սրապիոնյան) կինոնկարների արտադրման և վարձույթի հանրապետական կազմակերպություն ստեղծելու անհրաժեշտության մասին: Ի պատասխան Դզնունու առաջարկության Լուկաշինը պատրաստակամություն է հայտնում ամեն գնով աջակցել կինոգործի ստեղծմանը: Բայց հանրապետությունը դեռ ծանր օրեր է ապրում, հերթի էին դրված կենսականորեն անհրաժեշտ բազմաթիվ ուրիշ հարցեր: Այս պայմաններում կառավարությունը կարողանում է կինոգործի կարիքներին հատկացնել միայն 60 ռուբլի՝ Դզնունու պահանջած նվազագույն գումարի՝ 3000-ի դիմաց: Այնուամենայնիվ, առաջին քայլն արված էր: Շուտով Աստաֆյան (Աբովյան) փողոցի վրա գտնվող պուրակում, գըլխավոր հանրախանութից քիչ վերև, շինարարական աշխատանքներ սկսվեցին: Ամսից պակաս տևեց գողտրիկ ամառային կինոթատրոնի շենքի կառուցումը: Բոլոր աշխատանքները վարկով էին արվում, իսկ Ժողկոմխորհից ստացված 60 ռուբլով Ն. Խարազյանը մեկնում է Թիֆլիս՝ պրոյեկցիոն սարքավորում և կինոնկար գնելու: Գործուղումը հաջողությամբ է ավարտվում և մի քանի օր անց Խարազյանը վերադառնում է Երևան՝ բազմասերիանոց «Ոչ ոք» ֆիլմի ժապավենով:

1923 թվի հունիսի 8-ին կայացավ «Պետկինո» ամառային կինոթատրոնի բացումը: Այդ օրը Աստաֆյան փողոցում տոնական աշխուժություն էր տիրում. նվագում էր փողային նվագախումբը, փայլփլում էին կինոռեկլամները, իսկ փայտաշեն դրամարկղում տոմսավաճառի «դերում» աշխույժ առևտուր էր անում սիրված դերասան Համբարձում Խաչանյանը:

Շատ չանցած սկսվեց ձմեռային կինոթատրոնի շինարարությունը: Բայց հիմնական խնդիրը՝ սեփական կինոարտադրություն ունենալու խնդիրը, դեռ չէր լուծվում: Ֆիլմերի արտադրությունը մեծ ծախսերի հետ էր կապված: Այս նպատակով 1923 թ. աշնանը հիմնադրվեց Պետական լուսանկարչության և կինեմատոգրաֆիայի բաժնետիրական ընկերություն՝ Պետլուսկինոն: Մեկ-երկու տարում հանրապետությունում սկսեցին գործել տասնյակ կինոթատրոններ և շրջիկ կինոսարքավորումներ: Պետլուսկինոն վերածվեց ֆինանսապես ապահովված կազմակերպության և սեփական կինոֆիլմերի ստեղծումը այլևս անիրագործելի երազանք չէր:

1924-ի մայիսին սկսվեցին վեց մասից բաղկացած «Սովետական Հայաստան» վավերագրական կինոնկարի նկարահանումները, իսկ նոյեմբերի 29-ին՝ հանրապետությունում սովետական կարգերի հաստատման չորրորդ տարեդարձի օրը, նկարն արդեն էկրանների վրա էր:

Այժմ արդեն գեղարվեստական կինոնկարի ստեղծման գործն էր օրակարգի խնդիր:

1925-ի աշնանը Պետլուսկինոյի գեղարվեստական խորհուրդը հաստատեց Համո Բեկնազարյանի «Նամուս» սցենարը՝ ըստ Շիրվանզադեի համանուն վիպակի: Սցենարի հեղինակը նաև բեմադրող-ռեժիսորն էր: Բեկնազարյանը դեռ Մոսկվայում ուսանելու տարիներին նկարահանվում էր նախահեղափոխական Ռուսաստանի կինոստուդիաներում: Նա արդեն ճանաչված դերասան էր, մինչև իսկ «կինոաստղ», տպավորիչ մականունով՝ Համո Բեկ: Հեղափոխությունից հետո Բեկնազարյանը Վրաստանում կինոարտադրության հիմնադիրներից մեկն էր և մի շարք ֆիլմերի հեղինակ:

Կատարվեց դերակատարների ընտրություն: Այն ժամանակ դեռևս երիտասարդ դերասաններ Հրաչյա Ներսիսյանը, Նինա Մանուչարյանը, Համբարձում Խաչանյանը, Հասմիկը, Արուս Ոսկանյանը և ուրիշներ կինոփորձի մտնելուց առաջ հուզվում էին Պետլուսկինոյի մուտքի առաջ: Կընտրվե՞ն արդյոք, կկարողանա՞ն բավարարել ռեժիսորի պահանջները: Ի դեպ, նրանց հուզմունքը այնքան էլ անհիմն չէր. Բեկնազարյանը առաջին հայացքից մերժեց Հրաչյա Ներսիսյանին: Արվեստակիցների միջամտությունն իզուր անցավ: Հետո միայն հաջողվեց համոզել օպերատորին դերի մեջ փորձել Հրաչյա Ներսիսյանին, և բոլորովին ի միջի այլոց նկարահանեց նրան: Եվ հաջորդ օրը, այդ ժապավենը դիտելուց հետո, Բեկնազարյանը Ներսիսյանին հաստատեց Ռուստամի դերում, և այդ օրվանից սկսվեց դերասանի հաղթական երթը հայկական կինոարվեստում:

«Նամուսը» վիթխարի հաջողություն ունեցավ, համարվեց տարվա լավագույն կինոնկարը: Երեք ամիս ֆիլմը չէր իջնում Մոսկվայի էկրաններից: Հիացական գրախոսականներ տպվեցին «Պրավդա», «Նաշա գազետա», «Կոմսոմոլսկայա պրավդա» և մյուս թերթերում:

Այսպես սկիզբ առավ ազգային կինոարվեստը մեր հանրապետությունում:



*Ամեն ոք պետք է հասկանա ու սիրի երաժշտությունը*

# «ԼԱ ՍԿԱԼԱ»

ԱՐՄԵՆ ԲՈՒԴԱՂՅԱՆ

*Միլանի «Լա Սկալա» թատրոնը*

Իտալիա, Միլան... Ժամանակակից եվրոպական քաղաք՝ լայն պողոտաներով, բազմահարկ տներով: Սակայն կենտրոնում դեռևս պահպանվել են հին նեղլիկ փողոցներ, և երբեմն թվում է, թե քարե միջանցքով ես անցնում: Ահա և թատերական հրապարակը: Լեոնարդո դա Վինչիի արձանի շուրջը կուտակվել են մեքենաներ, ավտոբուսներ: Հուշարձանի դեմ-դիմաց «Լա Սկալա» օպերային թատրոնն է, թատրոն, որի փառքը աշխարհով մեկ է տարածվել...

Իտալիան օպերային արվեստի հայրենիքն է: Այստեղ, Ֆլորենցիա քաղաքում ստեղծվել են աշխարհում առաջին օպերաները: Ֆլորենտացիների օրինակին հետևեցին նաև մյուս քաղաքների կոմպոզիտորները, և շուտով օպերան դարձավ իտալացիների ամենասիրած արվեստը: Տասնյակ շրջիկ թատերախմբեր տարածեցին այն երկրի հեռավոր շրջաններում: Մշտապես գործող օպերային թատրոններ հիմնվեցին Հռոմում, Վենետիկում, Նեապոլում, Մանտուայում... Միլանի «Լա Սկալան» համեմատաբար ուշ կառուցվեց (1776—78 թթ.), սակայն իր նշանակությամբ դարձավ Իտալիայի առաջին օպերային թատրոնը:

«Լա Սկալա» անունը ինքնին ինչեղ է, գեղեցիկ: Ինչո՞ւ են, սակայն, այդպես անվանել: Իտալերեն «Լա Սկալա» նշանակում է «սանդուղք», «աստիճան»: Պատմում են, որ հնում թատերական հրապարակ տանող մի գեղեցիկ աստիճան կար: Նրա մոտակայքում գտնվող եկեղեցին ստացավ «Սանտա Մարիա դելլա Սկալա» անունը (այսինքն՝ աստիճանի մոտ տեղադրված սուրբ Մարիայի եկեղեցի): Հրդեհի ժամանակ եկեղեցին այրվեց, և նրա տեղը կառուցվեց օպերային թատրոն, որը ժառանգեց եկեղեցու հին անունը և կոչվեց «Տեատրո ալլա Սկալա» (իսկ համառոտ՝ «Լա Սկալա»):

Արտաքուստ «Լա Սկալայի» շենքը կարծես ոչնչով աչքի չի ընկնում, սակայն մտնելով ճեմասրահ՝ անմիջապես զգում ենք, որ արվեստի օջախ ենք այցելել: Հարուստ ձևավորում, հայելիներ, ճոխ լուսավորություն, կոմպոզիտորների արձաններ. Ռոսսինի, Բելլինի, Դոնիցետի, Վերդի, Պուչչինի: Կոմպոզիտորներ, որոնց օպերաները առանձին տեղ գրավեցին «Լա Սկալայի» խաղացանկում, մեծապես նպաստեցին թատրոնի համաշխարհային ճանաչմանը: Դահլիճի մուտքի մոտ անշարժացել են գվարդիական սպառազեն պինվորները: Պայմանականությո՞ւն: Թերևս: Բայց և հիշեցում. թատրոնը արվեստի տաճար է, ներկայացումը՝ սրբագործություն: Ոչ ոք իրավունք չունի խախտելու սահմանված կարգը, հասարակական վայրում իրեն պահելու ավանդական կանոնները:

Ո՛չ պակաս տպավորիչ է և «Լա Սկալայի» դահլիճը: Կարմիր թավշով պատած բազկաթոռներ, ոսկեզօծ օթյակներ... Ահա այս օթյակում նստած, Ջուզեպե Վերդին դիտում էր իր բազմաթիվ օպերաների ներկայացումները: Վերդին մշտապես ապրում էր Միլանում և նրա գործունեությունը հսկայական նշանակություն ունեցավ «Լա Սկալայի» գեղարվեստական սկզբունքների ձևավորման և արմատավորման համար: Նրա հայրենասիրական օպերաներում արտահայտված ազատատենչ գաղափարները ժողովուրդն ընդունում էր որպես հեղափոխական պայքարի կոչ: Ռեալիստական արվեստի բարձրակետեր դարձան նրա «Տրավիատան» և «Ռիգոլետոն», «Աիդան» և «Օթելլոն»...

Դահլիճի պատերն իսկ կենդանի պատմություն են դարձել, ասես խտացրել են օպերային երաժշտության գեղեցկագույն հնչյունները, ջերմ պզացմունքներն ու բուռն կրքերը, որոնք վերապրում էին և՛ բեմում խաղացող հռչակված դերասանները, և՛ խանդավառ հանդիսականները: 3600 տեղանոց հսկա դահլիճը չէր կարող տեղավորել բոլոր երաժշտ-



«Լա Սկալա» թատրոնի ներսը

տամերներին, և մարդիկ նստում էին ուղղակի հատակին, աստիճաններին, կանգնում էին անցատեղերում: Ծափողջյուններ, ծաղիկներ, «բիս» և «բրավո» բացականչություններ... Իսկ ներկայացումից հետո ոգևորված բազմությունը ջահերի լույսով ձեռքերի վրա թատրոնից դեպի տուն էր տանում սիրելի արտիստներին, կոմպոզիտորներին:

Ավանդաբար «Լա Սկալան» ամեն տարի, թատերաշրջանից-թատերաշրջան, թարմացնում է մենակատարների կազմը, նոր երգիչներ հրավիրում: Նրա բեմում հանդես են եկել համաշխարհային վոկալ արվեստի լավագույն ներկայացուցիչներ Ջուդիթա Պաստան և Մարիա Մալիբրան, Էնրիկո Կարուզոն և Տիտա Ռուֆֆոն, Մարիո դե Մոնակոն և Բենյամինո Ջիլյին ու տասնյակ այլ երգիչ-երգչուհիներ: «Լա Սկալայում» երգել են ռուս մեծ արտիստներ Ֆյոդոր Շալյապինն ու Լեոնիդ Սոբինովը և անջնջելի տպավորություն գործել:

«Լա Սկալայի» պատմության մեջ մի դարաշրջան կազմեց դի-

---

## Քո հեռավոր հասակակիցները

# ՄԱՐՏԱԿԱՆ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՆԵՐԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՎ

Լ. ՍԻՄՈՆՈՎԱ

*Դու, քո ընկերը, Սովետական Միության ողջ պիոներիան գնում են «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» երթի երթուղիներով։*

*Սոցիալիստական բոլոր երկրների պիոներները նույնպես ապրում և աշխատում են «Կոմունիստներից օրինակ ենք վերցնում» նշանաբանով։ Ձգտում են ձեզ հետ պիոներական միասնական շարք կանգնել նաև կապիտալիստական երկրների պիոներները։ Իսկ թե ինչպես են գործում նրանք, ինչպես են օգնում իրենց ավագ ընկերներին՝ կոմունիստներին, կիմանաք ստորև տպագրվող նյութերից։*

Ջոկատավար Լիվյանա Սակկետտին իր պիոներական ջոկատը պարտիզանական արահետով ավելի ու ավելի վեր է առաջնորդում: Շուտով հասնում են այնտեղ, ուր թաքնվում էին իտալական Դիմադրության վինվորները: Այստեղից նրանք ցած էին սուրում և խորտակում վենք տեղափոխող ֆաշիստական գնացքները կամ պայթեցնում ռազմամթերքների պահեստը...

— Այո,— պատմում է Լիվյանան,— մեր պարտիզանական գերեզմանոցում թաղված են նաև սովետական երկու մարդ: Նրանք մասնակցել են մեր պայքարին: Առայժմ շատ բան չգիտենք նրանց մասին: Ձեր ջոկատը մեծ պատվի կարժանանա, եթե կարողանա այդ խիզախ ու անվեհեր մարդկանց մասին ավելին իմանալ:

— Մենք կիմանանք,— ասում է ջոկատի հրամանատար Ստեֆանո Գիդոտտին:

Երբ Ռեջիո-Էմիլիայի պիոներները ամփոփեցին իրենց աշխատանքի արդյունքները, Ստեֆանո Գիդոտտի ջոկատը լավագույնը ճանաչվեց: Այդ ջոկատի անդամները մյուս ջոկատներից ավելի շատ երեխաներ ընդգրկեցին պիոներական կազմակերպության մեջ, իսկ դա այնքա՜ն կարևոր է այսօր Իտալիայի պիոներների համար:

Մեկուկես տարվա ընթացքում նրանք Վիետնամի համար 600 հազար լիրա հավաքեցին, իսկ այժմ ավելի շատ են հավաքել Չիլիի համար: Նրանք մեծ քանակությամբ մետաղի թափոն ու շագանակ են հավաքել, իսկ դրանց վաճառքից ստացված փողը հանձնել կոմունիստական կուսակցությանը, կոմունիստների «Ունիտա» թերթին: Նրանք օգնեցին իրենց գավառում կազմակերպել ճամբար: Դա լուրջ հաջողություն էր: Երեխաները գալիս են ճամբար, որպեսզի հանգստանան և զբաղվեն, իսկ այնտեղից մեկնում են պիոներ դառնալու հաստատ որոշմամբ: Պիոներներն իրենց ճամբար հրավիրեցին հիվանդ երեխաներին, որոնք կազդուրվելու կարիք ունեին:

— Ո՞ր ջոկատը կդառնա լավագույնը,— հարցնում եմ Ստեֆանոյին:

— Այն, որը հասկանում է,— պատասխանում է նա,— որ երբ կարևոր խնդիրներ են քննարկում, անհրաժեշտ է լուրջ լինել, իսկ մնացած ժամանակը՝ հնարամիտ, ուրախ, սրամիտ:

# ՏՈՆԱՎԱՃԱՌՈՒՄ

Միշել Բոյեն սովորել է ճարպկորեն վիմագրեր պատրաստել: Ընդհանրապես, դա այնքան էլ վատ

բիժոր Արթուրո Տոսկանինիի աշխատանքը: Հանճարեղ երաժիշտն իր շուրջը համախմբեց թատերական ողջ կոլեկտիվը: Արտակարգ պահանջկոտությամբ, բարձրագույն ճշմարտացիությամբ նա բեմում մարմնավորում էր դասական և ժամանակակից կոմպոզիտորների նորանոր օպերաներ: «Լա Սկալայի» բեմադրությունների անբաժան բաղադրյալները դարձան ոչ միայն երգիչների չըգերազանցված վոկալ տեխնիկան, այլև համոզիչ բեմական խաղը, կերպարների կերտման ամբողջականությունը, այսինքն՝ այն բոլորը, առանց որի հնարավոր չէ պատկերացնել ժամանակակից արվեստը:

Երկրորդ համաշխարհային պատերազմի օրերին, ռմբակոծության հետևանքով թատրոնն ավերվեց: Բարեբախտաբար պահպանվել էին ճարտարապետ Ջ. Պիերմարինիի նախագծերը, որոնց շնորհիվ արդեն 1946-ին թատրոնը վերականգնվեց իր նախկին տեսքով: Առաջվա նման այսօր էլ «Լա Սկալան» համաշխարհային արվեստի մշակութային խոշորագույն օջախներից է: Կատարելագործվելու համար տարբեր երկրներից այստեղ են գալիս երիտասարդ շնորհալի երգիչներ (հայ արտիստներից կատարելագործվել է երգիչ Վահան Միրաքյանը): «Լա Սկալայի» թատերախումբը հաճախ հյուրախաղերի է մեկնում: Երկու անգամ (1964 և 1974 թթ.) եղել է Սովետական Միությունում, վաստակելով մեր երաժշտասերների համակրանքն ու բարձր գնահատականը:

«Լա Սկալայի» արվեստին կարելի է ծանոթանալ ունկնդրելով բազմաթիվ ձայնագրություններ այդ հիանալի կոլեկտիվի կատարմամբ: Այդ պահին մեր հայացքի առաջ կյանք են առնում սիրված օպերաների հերոսները և երաժշտության թևերով կրկին տեղափոխվում ենք այնտեղ, ուր ծնվել է օպերան՝ ԻՏԱԼԻԱ...

գործ չէ: Լինոլեումի կտորի վրա նկարում են դիսնեյան պատմական կինոնկարների ինչ-որ հերոսի: Տվյալ դեպքում նկարել՝ նշանակում է դանակի ծայրով լինոլեումի վրա կգուշությամբ ուրվագծեր քաշել: Հետո այդ գծերը ներկում ես գունավոր թանաքներով: Վրան դնում ես ամուր թղթի թերթ և որոշ ժամանակ մամլիչի տակ պահում... Այս ամենը Միշելը տեսել էր տոնավաճառում, սովորել և այժմ նրա գործերը շատ լավ են վաճառվում, գնորդները հավանում են:

Ավելի լավ են գնվում Մարյանա Ամարոնի մոմաթղթից պատրաստած կենդանիների պատկերները: Նա դրանք պատրաստում է հին ու վառված մոմերից: Մեղրամոմը հալվում է և ստվարաթղթե պատվանդանին հայտնվում է ոչ այն է փիղ, ոչ այն է վագր, գորտի նման մի բան, բայց ժանիքներով, երկար պոչով և փետրավոր գլխով...

Իվ Գրանդգիյոմը և Միշել Դյուրետը ճանաչված են որպես օդային օձեր պատրաստող հիանալի վարպետներ: Նրանք ասում են, որ դրանց պատրաստելը շատ հեշտ է. երկու ձողիկներ խաչաձև մեխել, երկար թել կցել... ու վերջ: Բայց, չգիտես ինչու, ուրիշների պատրաստած օձերը շատ չեն բարձրանում և այդքան գեղեցկատես չեն:

Այսպես տոնավաճառներում շրջում են աղջիկներն ու տղաները, խաղալիքներ, հուշանվերներ վաճառում, և մարդիկ հաճույքով գնում են այդ գեղեցիկ իրերը: Շատերը գլխի էլ չեն ընկնում, որ հուշանվերներ վաճառող պատանիները Շվեյցարիայի պիոներներն են՝ «Առաջ քայլողների» կազմակերպության անդամներ:

Տոնավաճառը կոմունիստներն են կազմակերպում: Ժնևի գրեթե ողջ բնակչությունը հավաքվում է տոնավաճառում: Եվ այստեղ ելույթ են ունենում կոմունիստները, Աշխատանքի կուսակցության հայացքներն ու գործունեությունը քարոզող հատուկ թողարկված թերթեր, գրքեր ու գրքույկներ են վաճառում: Պիոներներն ամեն ինչում օգնում են նրանց:

*Թարգմ. ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆԻ*





*Անցած ուսումնական տարվա վերջին մեր ամսագրի խմբագրությունը դիմեց Երևանի Հովհ. Թումանյանի անվան № 32 միջնակարգ դպրոցի 8-րդ դասարանցիներին, առաջարկելով շարադրություն գրել հետևյալ թեմայով. ո՞ր մասնագիտությունը, արհեստն ու ընդհանրապես աշխատանքն է ձեզ սրտամոտ և ինչո՞ւ։ Ի՞նչ եք երազում դառնալ։ Ի՞նչ եք անում ձեր երազանքներին հասնելու համար։*

*Ստորև տպագրում ենք այդ շարադրություններից երկուսը։*

*Կարծում ենք, առաջադրված հարցերը կհետաքրքրեն բոլոր դպրոցականներին և շատերը կկամենան մասնակցել սկսված խոսակցությանը։*

## ՈՒՄ ԵՄ ՈՒԶՈՒՄ ՆՄԱՆՎԵԼ

Երբ հայտնեցին ստեղծագործական շարադրության թեման, ես ուրախացա։ Պատճառն այն է, որ այդ հարցին ես պատահական պատասխան չեմ տալու։ Այդ հարցի շուրջ երևի բոլորն էլ մտածում են, և տարբեր հասակում պատասխանը տարբեր է լինում, ձգտումներն ու երազանքը՝ նույնպես։

Ես սիրում եմ շինարարի աշխատանքը, ավելի ճիշտ՝ կառուցող բանվորի աշխատանքը։ Այս սերն ու ձգտումներն իմ մեջ հարուցել է մեր հարևանը՝ բոլորի կողմից սիրված ու հարգված վարպետ Հովհաննեսը։ Նա միշտ բերկրանքով է խոսում իր աշխատանքի, իր սիրած արհեստի մասին։ Մենք՝ փոքրերս, հաճախ ենք լսել վարպետ Հովհաննեսից. «Կա՞ ավելի մեծ բան, քան այն, երբ տուն ես կառուցում, բնակելի շենք, ուր մարդիկ սկսում են ապրել։ Չէ՛, իմ կարծիքով, սրանից լավ բան չկա»։

Վարպետ Հովհաննեսը սիրահարված է իր աշխատանքին, որով զբաղվում է շուրջ 40 տարի։ Երբ ավարտվում է հերթական շենքի կառուցումը, վարպետ Հովհաննեսի տանն այդ իրիկուն խնջույքի սեղան է բացվում (իսկ ե՞րբ նրա տանը խնջույք չէ։ Երբ հաշտ ու համերաշխ բազմանդամ ընտանիքը բոլորում է սեղանի շուրջը, ուրախությունն սկսվում է, որին միշտ մասնակից են հարևանները)։ Իսկ ասածս հանդիսավոր խնջույքին բոլորը լուռ նայում են վարպետ Հովհաննեսին։ Նա, մի փոքր հապաղելով, ասում է. «Այս մեկն էլ պրծանք, վաղվանից նոր շենք ենք սկսելու, բարի բախտ ու երջանկություն նորաբնակներին»։ Նույնը կրկնում են բոլորը և խմում։ Այդ նորաբնակներին չի ճանաչում վարպետը, բայց նրանց է ուղղում իր սրտի խոսքը, որովհետև սիրում է մարդկանց և իր համեստ աշխատանքը նվիրաբերում նրանց։ Վարպետի երկու տղան շուտով ինժեներ են դառնալու, աղջիկը՝ ուսուցչուհի։ Նրանցից շատ գոհ է հայրը, իսկ զավակներն էլ իրենց հոր նման համեստ են ու մարդամոտ, օգնող ու կարեկից։

Այս է պատճառը, որ երբ ուսուցչուհին գրեց շարադրության թեման, իմ աչքերի առջև կանգնեց սիրելի վարպետը, որին և ես ձգտում եմ նմանվել։ Նա և իր ընտանիքը շատերին են լավի ու բարու օրինակ ծառայում։

*ՍԱՄՎԵԼ ՋԱԼՅԱՆ*



## ՈՒԶՈՒՄ ԵՄ ՆՄԱՆՎԵԼ ՀՈՐՍ

Ես միշտ էլ երազել եմ գոնե մի քիչ նմանվել հորս, ոչ նրա համար, որ նա լավ արհեստավոր է, որին բոլորը վարպետ են կոչում, այլ որ նա բարի, ազնիվ և բոլորին օգնության հասնող մարդ է։ Ո՞ր տղան չի ցանկանա, որ իր հայրը հարգված լինի ընկերների, հասարակության, բոլորի կողմից, իսկ իմ հայրը այդպիսին է։ Չկա մի գործ, որ հորս ձեռքից չգա։ Եվ ինչքա՜ն է նա սիրում աշխատել, իսկ երեկոյան մի քանի ժամով հանգիստ ու խաղաղ մշակում է մեր բակի փոքրիկ ծաղկանոցը։

Այնքան հրապուրիչ է՝ այդ փոքրիկ հողակտորը։ Երբ գալիս է երեկոն, ամբողջ բակը լցվում է սուսամբարի ու մեխակի բույրով։ Եթե մեկի արդուկը, հեռուստացույցը, ռադիոընդունիչը փչանում է, հորս է դիմում, և հայրս սիրով հասնում է բոլորին։ Այո, ես օրինակ եմ վերցնում իմ հայրիկից, նրա նման ուզում եմ օգնել բոլորին, ինչով կարող եմ,

## ՆՈՒՅՆԻՍԿ ԱՐԵՎԻ ՎՐԱ ԲԾԵՐ ԿԱՆ



Արևի վրա իսկապես որ բծեր կան, այդ բանը լավ գիտե ժամանակակից աստղագիտությունը: Այդ բծերը տհավոր հողմերից առաջացած ձագարաձև վիհերն են, որոնց խորքում երևում է լուսատուի պակաս պայծառությամբ փայլող կեղևը: Շատ խոշոր «բծերն» այնքան մեծ են, որ կարող ենք տեսնել անզեն աչքով անգամ: Մեր նախնիներն էլ տեսել են այդ բծերը, բայց բացատրել չեն կարողացել:

Այդ բծերը, սակայն, այնպես են բորբոքել նրանց երևակայությունը, որ ծնել են «նույնիսկ արևի վրա բծեր կան» առածը: Մենք այսօր էլ գործածում ենք այս արտահայտությունը, կամենալով ասել, թե աշխարհում չկա մի բան, որ պակասություն չունենա, որ միանգամայն կատարյալ լինի:

Թե որքանով է ճիշտ այս միտքը՝ դա արդեն այլ բան է:

## ԵՎ ԴՈ՞Ւ, ԲՐՈՒՏՈ՛Ս

Հին Հռոմի մեծատաղանդ կորավարներից մեկը՝ Գայոս Հուլիոս Կեսարը, կյանքի վերջում դարձավ լիակատար իշխանություն վայելող դիկտատոր:

Պարզ է, որ նա Հռոմի հանրապետությունը միապետություն դարձնելու նպատակ էր հետապնդում:

Հանրապետականները նրա դեմ դավադրություն կազմակերպեցին, որին մասնակցում էր նույնիսկ Հուլիոս Կեսարի սիրելին և ընկերը՝ Հունիոս Բրուտոսը:

Մեր թվարկությունից առաջ, 44 թվականին, սրախողխող սպանվում է դիկտատորը: Իրեն սպանողների



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

խմբի մեջ տեսնելով Բրուտոսին, մահացու վիրավոր Կեսարը դառնացած բացականչում է. «Եվ դո՞ւ, Բրուտո՛ս»: Հայտնի չէ, թե ճիշտ այդպե՞ս է եղել արդյոք, բայց հարյուր և ավելի տարի անց այդպես է նկարագրել հույն գրող Պլուտարքոսը հույն և հռոմեացի հռչակավոր գործիչներին նվիրված իր «Համեմատական կենսագրություն» գրքում, իսկ ավելի ուշ՝ անգլիացի մեծանուն դրամատուրգ Շեքսպիրը՝ իր «Հուլիոս Կեսար» հայտնի պիեսում:

Շեքսպիրի պիեսի շնորհիվ հոգևարքի ժամին Կեսարի ասած խոսքը դարձավ ասացվածք, որ արտահայտում է կարմանք ընկերոջ հանկարծահաս դավաճանության առթիվ: Բայց իրականում ոչ թե Բրուտոսը, այլ ինքը՝ Կեսարն էր հայրենիքի դավաճանը, հանրապետության թշնամին և պետական հանցագործը: Այս բանը չպետք է մոռանալ:

որ մարդիկ իմ մասին էլ խոսեն այնպես, ինչպես հորս:

Բայց իմ երազանքի մասին ես գրեթե չխոսեցի: Իմ հայրը շատ է ցանկացել ընդունվել բարձրագույն ուսումնական հաստատություն, սակայն այդ նրան չի հաջողվել: Իսկ այժմ այդ խիստ հասկանալի ցանկությունը նա ինձ հետ է կապում, և ես այդ շարունակ զգում եմ: Սիրելի՛ հայրիկ, քո ցանկությունը կկատարվի, քո անկատար երազանքները կտեսնես կատարված: Ես կդառնամ ինժեներ-քիմիկ և իմ գիտելիքները կգործադրեմ իմ ժողովրդի բարօրությանը, իսկ կյանքում կլինեմ ճիշտ քեզ նման՝ համեստ ու կարեկից դեպի մարդիկ:

Իմ նպատակին հասնելու համար (որ հայրս չտխրի) ես լավ եմ սովորում, միայն երեք առարկայից ունեմ «4», մյուսները «5» են:

ՇԱՀԵՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ



# Ի Ն Ը  Տ Ա Ր Ո Ւ Մ

ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Լոնդոնից ոչ հեռու, Թեմզայի ափին գտնվող միջնադարյան դղյակն հասնելու համար կա երկու ճանապարհ. մեկը սկսվում է Վաթեռլոո կայարանից, որտեղից կարելի է նստել ճեպընթաց գնացք, մյուսը՝ քաղաքամերձ անանուն, փոքրիկ նավահանգստից, որտեղից կարելի է նստել անգամ նավակ:

Այցելուներին դղյակն անմիջապես չի երևում. նախ բացվում է ծաղկապատ դարատափը, խուսված և գույնզգույն գազոններով, շատրվաններով, ապա ընկըլվում են աղյուսե կարմիր պատերը, որոնք բաղեղների միջով գնում են դեպի դղյակը: Հանկարծ պատերը վերջանում են կամ, ավելի ճիշտ, դեմ են առնում դղյակ բարձրացող աստիճաններին:

Ահա այս դղյակի հարկաբաժիններից մեկում իր կյանքի վերջին ինը տարին անցկացրեց Լոնդոնի թագավորական ընկերության անդամ, սանկտ-պետերբուրգյան, ֆլորենցյան, փարիզյան և աշխարհի բազմաթիվ այլ ակադեմիաների անդամ, ֆիզիկոս Մայքլ Ֆարադեյը: Ֆիզիկոս, որի անունը իրավամբ պետք է դնել Ֆրանկլինի, Վոլտայի և Ամպերի անունների կողքին:

Ֆարադեյը ծնվել է 1791-ի սեպտեմբերի 22-ին: Սովորաբար գրում են, որ նա ծնվել է գավառում, այսպես կոչված, «Նյուինգտոնյան պոյիգոն» գյուղում, բայց այդպիսի գյուղ Անգլիայում չկա, դեռ ավելին, այդ վայրը հարյուր տարի է արդեն Լոնդոնի սիրտն է: Հայրը դարբին էր, իսկ մայրը՝ աղախին: Ստացած կրթությունը՝ սովորական գրաճանաչություն, թվաբանություն:

Երևի Մայքլը նույնպես դարբին դառնար, եթե պատահաբար աշխատանքի չանցներ գրախանութում: Շուտով նա խանութում աչքի ընկավ իր աչալրջությամբ և նշանակվեց կազմարարի օգնական: Փաստորեն նրա ձեռքի տակով էին անցնում հազարավոր



## ԴԻՌՆԵՐ-ի փոստից

## Վ Ր Ի Ժ Ա Ռ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

Մեր գյուղում գրեթե բոլոր տըներն ունեն «իրենց» ծիծեռնակները: Նրանք ամեն տարի գարնան հետ գալիս են ու աշնանը հրաժեշտի ծանր հայացքով հեռանում:

Մեր ծիծեռնակները արդեն հինգերորդ տարին է վերադառնում են իրենց բույնը, նորոգում, ձվեր դնում: Նրանց գալուստը կատարյալ տոն է մեզ համար: Մեծ ու փոքր հավաքվում, ուշադրությամբ հետևում ենք նրանց ժրաջան աշխատանքին: Չգիտես ինչու, ես այդ պահին հիշում եմ Աղայանի տողերը.

Ծիծեռնակը բույն է շինում,
Ե՛վ շինում է, և՛ երգում...

Այս տարի ծիծեռնակները նորոգել վերջացրել էին բույնը և գնացել էին կեր որոնելու, երբ եկավ մի հանդուգն ճնճղուկ, տեղավորվեց բնում: Քիչ անց եկավ նրա ընկերը: Մենք փորձեցինք քշել նրանց, բայց անօգուտ: Ծիծեռնակները վերադարձան: Բույնը գրավված տեսնելով, սկսեցին ծղրտալ, պտտվել բնի շուրջը: Ճնճղուկների պետքն էլ չէր: Հանգիստ, բնում նստած, ով գիտե ինչ էին կռուցում: Ծիծեռնակները թողին ու հեռացան: Մնացինք տարակուսած: Բայց մեր տարակուսանքը կարճ տևեց: Քիչ անց մեր երկու տարաբախտ ծիծեռնակների գլխավորությամբ մի քանի տասնյակ ծիծեռնակներ հայտնվեցին, պտտվեցին օդում և կտուցներով բերած ցեխով սկսեցին ծեփել բույնը:

Շուտով բույնը լրիվ փակվեց: Ծիծեռնակները հեռացան, երկու բնակուրկներն էլ հետը: Նրանց գնալու հետ կարծես գնացին և մեր ուրախ օրերը:

Մի օր բակում խաղում էինք, երբ լսվեց ծանոթ ճռվողյունը: Նայեցինք վեր: Նրանք էին՝ մեր ծիծեռնակները, մի քանի պտույտ գործեցին բնի շուրջը, հետո սկսեցին քանդել այնքան տքնությամբ շինածը: Բույնը բացեցին, երկու սատկած ճնճղուկները բնից վայր ընկան:

Մի քանի օր անց մեր ծիծեռնակները նոր բույն կառուցեցին: Հիմա արդեն բույնը դատարկ չէին թողնում: Մեկը գնում էր կեր ճարելու, մյուսը պահպանում էր բույնը:

ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ
Վրաստան, Ծալկայի շրջան, Նարգևանի միջն. դպր. 8-րդ դաս. աշ.

գրքեր: Նա հնարավորություն ուներ կարդալու դրանց մեծ մասը: Գրքերը բազմաբնույթ էին. Ֆարադեյին ավելի էին ձգում այն գրքերը, որոնք վերաբերում էին բնության, իրերի և երևույթների էության բացահայտմանը: Նա հափշտակությամբ կարդաց «Բրիտանական հանրագիտարանը», մադամ Մարսեի «Զրույցներ քիմիայի մասին», Լեոնարդ Էյլերի աշխատություններից մի քանիսը և շատ ու շատ այլ գրքեր: Քիմիային վերաբերող զրույցները նրա համար սովորական ընթերցանության գիրք չէր. նա փորձով ստուգեց գրքի յուրաքանչյուր պնդումը: Նա ստուգում էր նաև հանրագիտարանում նկարագրված փորձերը և խանութից ստացած աշխատավարձը ծախսում այդ փորձերի համար անհրաժեշտ սարքավորումներ ձեռք բերելու վրա: Իհարկե, հաճախ էլ ինքն էր պատրաստում համապատասխան սարքն ու անհրաժեշտ գործիքները:

Գրախանութը, ուր աշխատում էր Ֆարադեյը, հայտնի էր ոչ միայն իր հազվագյուտ գրքերով, այլ նաև հազվագյուտ այցելուներով: Այնտեղ էին գալիս ժամանակի նշանավոր մարդկանցից շատերը: Բնական է, որ նրանք չէին կարող չնկատել գրքի նկատմամբ անհուն սեր ունեցող կազմարարին՝ արդեն չափահաս Մայքլին:

Այցելուներից մեկը՝ Լոնդոնի թագավորական ինստիտուտի աշխատակից Միստր Դենսը մի անգամ հետաքրքրվեց, թե ինչ է կարդում կազմարարը, և զարմացավ, երբ զգաց, որ Ֆարադեյը պարզապես կլանել էր «Քիմիական լուրեր» մասնագիտական ամսագրի վերջին համարը: Դենսը ապշել էր Ֆարադեյի գիտելիքների վրա, նա ասելու բան չէր գտնում, ուղղակի լռում էր: Երբ Ֆարադեյը վերջացրեց իր խոսքը, Դենսը նրան ասաց.

— Մա՛յքլ, չէ՞ք ցանկանա արդյոք լսել իմ ընկերոջ՝ սըր Հեմֆրի Դևիի դասախոսությունները:





Ֆարադեյի դեմքը շառագունեց, երբ լսեց մեծ քիմիկոսի անունը: Նրա աչքերն արտահայտում էին երախտագիտություն:

Դևիի դասախոսությունները որոշեցին Ֆարադեյի ճակատագիրը. նրա խոր և տրամաբանված մտքերը, պարզ ու հստակ փորձերը գերեցին Մայքլին: Եվ վերջապես արդեն քսանմեկ տարեկան հասակում նա որոշեց նվիրվել գիտությանը:

Նա լսեց ընդամենը չորս դասախոսություն. աշխատանքային ժամերի զուգադիպությունը թույլ չտվեց շարունակելու սկսած գործը:

Գիտությանը նվիրվելու որոշումը՝ որոշում, բայց ինչպե՞ս մտնել այդ աշխարհը, ի՞նչ միջոցներով: Ահա թե ի՞նչն էր տանջում Ֆարադեյին:

Նա ստիպված նամակ գրեց Լոնդոնի թագավորական ընկերության պրեզիդենտ սըր Ջոզեֆ Բենքսին, ուր մանրամասն շարադրեց գիտությամբ զբաղվելու իր ցանկությունը:

Նամակը մնաց անպատասխան: Մի քանի ամիս անց, Դենսի խորհրդով, նա նամակով դիմեց իրեն՝ Հեմֆրի Դևիին: Նամակին կցեց այն չորս դասախոսությունների մաքրագրած և խմբագրած գրառումները, որոնք կարդացել էր Դևին:

Չորս օր անց ստացվեց պատասխանը՝ մի մեծ ծրարով, որի վրա ոսկե տառերով գրված էր «Մեծ Բրիտանիայի թագավորական ինստիտուտ»: Ֆարադեյը հուզմունքով բացեց այն. պատասխանը հուսալքող էր: Ինչ խոսք, Դևիին դուր էին եկել իր դասախոսությունների ֆարադեյյան ուշիմ և հետևողական գրառումները, բայց ի՞նչ կարող էր անել. ինստիտուտում թափուր տեղ չկար և... վե՛րջ:

Շուտով նորից առկայծեց հույսը: Այս անգամ արդեն պրոֆեսոր Դևիի դժբախտության հաշվին: Իհարկե, Ֆարադեյի համար ցավալի էր, որ լաբորատորիայում տեղի ունեցած պայթյունը վնասել էր Դևիի աչքը: Բայց ուրախալին այն էր, որ Դևին հիշել էր նրա գոյությունը և որոշել մինչև առողջանալը (այդ ընթացքում նա չէր կարող ո՛չ կարդալ, ո՛չ էլ գրել)

Մայքլին հրավիրել որպես անձնական քարտուղար:

Ֆարադեյի համար այդ հաճելի պարտականությունը կարճ ընթացք ունեցավ. Դևին շուտով առողջացավ և Ֆարադեյը կրկին վերադարձավ գրախանութ:

Այդ կարճ ժամանակահատվածում Դևին ճանաչեց և սիրեց նրան: Անուհետև պրոֆեսորի համար այնքան էլ հեշտ չէր ապրել և ստեղծագործել առանց Ֆարադեյի: Այնպես որ առաջին իսկ հարմար առիթով նա կհրավիրեր նրան: Մայքլը կզացել էր այդ և առաջվա անհանգստությունը տեղի էր տվել մի հաճելի սպասման:

Նրանց բաժանումը երկար չտևեց, շուտով աշխատանքից ազատվեց լաբորանտներից մեկը: Պարզ էր, որ այդ տեղը զբաղեցնելու էր Ֆարադեյը:

Թագավորական ինստիտուտի արձանագրություններում պահպանվել է Ֆարադեյին աշխատանքի ընդունել ցանկացող Դևիի հիմնավորումը. «Սըր Հեմֆրի Դևին պատիվ ունի տեղյակ պահելու դիրեկտորին, որ գտել է մեկին, որին ցանկալի է ընդունել... նրա անունը Մայքլ Ֆարադեյ է, նրա տվյալները լավ են, բնավորությունը ակտիվ է և զվարթ, իսկ գործելակերպը խելամիտ»:

Որոշվեց. Մայքլ Ֆարադեյը պետք է զբաղեցնի լաբորանտի թափուր մնացած պաշտոնը:

22-ամյա Ֆարադեյը դարձավ լաբորատորիայի առանցքը. նրա հետ հաշվի էր նստում ինքը՝ Դևին: Վերջինս այնպես կապվեց Ֆարադեյին, որ չէր պատկերացնում իր գոյությունը առանց նրա: Այդ էր պատճառը, որ 1813-ին Դևին Եվրոպա կատարած իր ճանապարհորդության մասնակից դարձրեց նաև Ֆարադեյին:

«Այդ առավոտը նոր էջ բացեց իմ կյանքում: Մինչ այդ, որքան ես հիշում եմ, չէի թողել դեռ Լոնդոնի սահմանները»,— տարիներ անց գրում է Ֆարադեյը:

Փարիզում Ֆարադեյը ծանոթացավ Ամպերին, Գեյ-Լյուսակին, Հումբոլտին:

Գիտության այդ կենտրոնը պտղաբեր եղավ Դևիի համար: Նրանք նոր էին հասել Փարիզ, երբ Ամպերը Դևիին տվեց ինչ-որ անհայտ նյութ՝ բաղադրությունը պարզելու համար: Մեծ քիմիկոսը իր աշակերտի ներկայությամբ այդ նյութից անջատեց մինչ այդ գիտությանն անծանոթ տարր: Դա յոդն էր:

Փարիզի «անմահները» հիացած էին. նրանց աչքի առաջ իեռավոր Անգլիայից եկավ Դևին, հայտնագործեց յոդը:

Ֆլորենցիայում Դևին ուսումնասիրեց ալմաստի այրումը թթվածնի մթնոլորտում և ապացուցեց ալմաստի ու գրաֆիտի բնույթների նույնությունը: Այդ ապացուցելու համար Դևիին անհրաժեշտ եղավ Դուքսի օգնությունը: Վերջինս Դևիին տրամադրեց իր հավվագյուտ ոսպնյակը:

Փորձերին մասնակցում էր նաև Ֆարադեյը: Նրանք ոսպնյակի կիզակետում տեղավորեցին ալմաստը: Հարավային արևի կիզիչ ճառագայթների կուտակված փունջը ընկնում էր ոսպնյակի վրա և հավաքվում կիզակետում: Ալմաստը գտնվում էր ապակյա գոգավոր կափարիչ ունեցող պլատինե գավաթի մեջ, որը լցված էր թթվածնով: Այդ փորձի մասին Ֆարադեյը իր օրագրում գրեց. «Այսօր մենք կատարեցինք մի մեծ փորձ, և, անկասկած, այն, ինչին ականատես եղանք մենք, արտակարգ հետաքրքրական էր և գեղեցիկ... Սըր Դևին հանկարծ նկատեց, որ ալմաստը այրվում է: Երբ ալմաստը հեռացրինք ոսպնյակի կիզակետից, նա շարունակեց նորից այրվել: Աստիճանաբար նրա բոսորագույնը փոխարկվեց բաց կարմրի: Այն շարունակեց այրվել գրեթե չորս րոպե...»

Ճանապարհորդության ընթացքում Ֆարադեյը սովորեց գերմաներեն և ֆրանսերեն, կգաց գալիք մեծ հայտնագործությունների հևքը, որով լցված էր Եվրոպայի մթնոլորտը: Դժվար է պատկերացնել այն մեծ ազդեցությունները, որ Եվրոպայի մեծերը թողին երիտասարդ Ֆարադեյի վրա: Փաստորեն Ֆարադեյը հաղթահարեց մեծ հետագոտող դառնալուն խոչընդոտող արգելքները:

(շարունակելի)

# ՃԱՆԱՉԻ՛Ր, ՊԱՀՊԱՆԻ՛Ր ՄԵՐ ԲՆԱՇԽԱՐՀԻ ՀԱԶՎԱԳՅՈՒՏ ԵՎ ԱՆՀԵՏԱՑՈՂ ԲՈՒՅՍԵՐԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մեր հանրապետությունում աճում են բազմաթիվ հազվագյուտ բույսեր, որոնք երկրագնդի այլ երկրներում չեն հանդիպում: Դրանք մեծ հետաքրքրություն են ներկայացնում գիտության համար: Այդ բույսերի թվին են պատկանում վայրի ցորենները, գարին, տանձենիները, որոշ հիրիկներ, փարդկակաչներ և այլն: Մեծ թվով արտասահմանյան գիտնականներ են գալիս Հայաստան դրանց հետ ծանոթանալու նպատակով:

Դուք անցնում եք դաշտերով, մարգագետիններով, անտառներով, տեսնում բազմաթիվ բույսեր, վայելում դրանց գեղեցիկ ծաղիկներով, ճաշակում համեղ պտուղներ, ծաղկեփունջ պատրաստում: Սակայն ձեզանից քչերը գիտեն, որ դրանց մի մասը անհետացման եզրին է կանգնած և մի քանի տարի հետո կարող է իսպառ վերանալ մեր բնաշխարհից:

Իսկ վերացման պատճառը մեր անտարբերությունն է, բուսական աշխարհը չճանաչելը: Մենք կտրատում

ենք անտառները, հնձում մարգագետինները, չորացնում ճահիճները, առանց հաշվի առնելու, որ դրա հետևանքով բույսերի որոշ տեսակներ իսպառ ոչնչանում են: Նշանակում է, այդ տնտեսական աշխատանքները այնպես պետք է վարել, որ հազվագյուտ տեսակները պահպանվեն:

Հազվագյուտ տեսակները ոչնչանում են նաև տրանսպորտի ու արդյունաբերության գործունեության հետևանքով առաջացած ծխից, փոշուց, գազերից, բնական հողակտորները շինարարական և այլ նպատակներով օգտագործելու պատճառով և այլն:

Մեր բնաշխարհի 180 ներկայացուցիչներ տիպիկ հայկական են, այլ երկրներում չեն հանդիպում: 400 տեսակներ հազվագյուտ են գիտության համար: Դրանք համարյա բոլորն էլ ունեն ոչ միայն գիտական, այլ նաև ժողովրդատնտեսական մեծ նշանակություն՝ դեղաբույսեր են, հումք են հանդիսանում գյուղատնտեսության և արդյունաբերության համար, ունեն դեկորատիվ նշանակություն:

Մեր հանրապետության դպրոցականները պետք է օգնեն մեծահասակներին պահպանելու այդ արժեքավոր տեսակները:

Վերջերս ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան հրատարակեց անհետացող և հազվագյուտ տեսակների «Կարմիր գիրք», որտեղ մանրամասն նկարագրվում են առաջնահերթ պահպանության կարիք ունեցող տեսակները:

Այսուհետև պարբերաբար նյութեր կհրապարակենք հազվագյուտ և անհետացող բույսերի մասին:

Լա՛վ ճանաչեցեք և պահպանեցեք մեր բնաշխարհի հազվագյուտ տեսակները:



## ՆԱԻՐՅԱՆ ՆՇԵՆԻ

Ձեզ քաջ հայտնի է սովորական նշենին: Դուք բազմիցս հաճույքով ճաշակել եք նրա համեղ պտուղները: Վաղ գարնանը, երբ սկսվում է բնության զարթոնքը, դուք անշուշտ, հիացել եք ձյունասպիտակ ծաղիկներով: Սակայն խոսքը այդ նշենու մասին չէ: Դա համեմատաբար տաք և չոր շրջաններում տարածված տեսակ է:

Հայաստանում աճում են նշենու մի քանի ուրիշ տեսակներ: Դրանցից մեկը՝ այսպես կոչված նաիրյան նշենին, խիստ հազվագյուտ և սահմանափակ տարածում գտած տեսակ է: Հանդիպում է Զանգեզուրում, ստորին լեռնային գոտում, չոր, քարքարոտ, ժայռոտ լանջերում: Մեղրու շրջանում ավելի հաճախ է հանդիպում՝ հատկապես Մեղրի և Վարդանաձոր գյուղերի շրջակայքում: Գորիսի շրջանում հանդիպում է ցածրադիր գոտու անբերրի ու անհրապույր լեռնալանջերում: Այս բույսը առաջին անգամ նկարագրել են բուսաբաններ Թախտաջյանը և Ֆեդորովը:

Նաիրյան նշենին թուփ է մինչև 1 մետր բարձրությամբ, այս ու այն կողմ տարածված, համարյա սողացող ճյուղերով: Ընձյուղները վառ ծիրանագույն են, նեղ-նշտարաձև տերևներով և բաց վարդագույն ծաղիկներով: Պտուղները համարյա գընդաձև են՝ թավշանման խավով: Ծաղկում է ապրիլին: Պտուղները հասունանում են սեպտեմբերին:

Նաիրյան նշենին խիստ արժեքավոր է, քանի որ տարածված է միայն Հայկական ՍՍՀ-ի Մեղրու և Զանգեզուրի շրջաններում, աննշան տարածություն է զբաղեցնում և երկրագնդի այլ շրջաններում չի հանդիպում: Դա միայն ու միայն մեր հանրապետության մենաշնորհն է: Եթե այս կամ այն պատճառով նաիրյան նշենին ոչնչանա Մեղրու և Գորիսի շրջաններում, նշանակում է, այն իսպառ կվերանա երկրագնդի երեսից:

Մինչդեռ այս տեսակը գիտության համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում:

Զանգեզուրի պիոներ-դպրոցականները հայրենասիրական մեծ նախաձեռնություն հանդես բերած կլինեն, եթե պահպանության տակ վերցնեն այս հազվագյուտ և հետաքրքիր թփատեսակը: Կարելի է հավաքել նաիրյան նշենու պտուղները, առանձնացնել սերմերը ու դրանք ցանել դպրոցամերձ հողամասում: Որոշ սերմեր էլ կարելի է ցանել այն հանդամասերում, որտեղ սովորաբար հանդիպում է նաիրյան նշենին:

# ՈՒՐ ԷԻՆ ԱՆՀԵՏԱՆՈՒՄ ԼՈՒՑԿԻՆԵՐԸ

Ուսումնական տարին ավարտվել էր: Լևոնն ազատ ժամանակ շատ ուներ և ուզում էր զբաղվել որևէ հետաքրքիր գործով: Բայց ինչո՞վ:

Մի անգամ ձեռքն ընկավ սոճու կեղև: «Հնարավոր չէ՞ սրանից մի բան պատրաստել,— մտածեց նա,— դե, ի՞նչ կա որ, փորձեմ:

Ճիշտ է, դրա վրա նա շատ չարչարվեց, զգույշ մաքրեց կեղևը, լաքապատեց և պատրաստեց մի ինքնաթիռի նմանակ: Իր առաջին աշխատանքը նվիրեց տատիկին՝ ծննդյան օրվա առթիվ:

— Անչա՛փ շնորհակալ եմ, թոռնի՛կս: Այսօր ամենաթանկ նվերը սա է ինձ համար:

Գովասանքը ոգևորեց Լևոնին, և նա որոշեց իրենց տան մանրօրինակը (մակետը) պատրաստել: Երկար, երկար շրջեց տան չորս կողմը, ինչ-որ բան նկարեց տետրում և գործի անցավ: Մի քանի օր անց տան մանրօրինակը պատրաստ էր: Հետո փորձեց առագաստանավակ պատրաստել... Իհարկե, միանգամից չէր ստացվի: Լևոնը նախ առագաստանավ պատկերող ամսագրեր ու գրքեր ուսումնասիրեց, նկարներ դիտեց և միայն դրանից հետո սկսեց աշխատանքը:

Գործը դժվարությամբ էր առաջ գնում, բայց որոշ ժամանակ անց, նրա առաջ դրված էր, ասես, կապույտ ալիքների վրա սահող միջնադարյան ասպետական նավակը: Աշխատանքը ոգևորում էր Լևոնին, և որոշեց հայկական եկեղեցու մակետ պատրաստել: Նորից հաջողությունը ուղեկցեց նրան:

Մի անգամ մայրը տղայի գրպանում լուցկիներ հայտնաբերեց և շատ անհանգստացավ. «Մի՞թե ընկնել է ծխել»: Երբ հայրը աշխատանքից վերադարձավ, մայրն անմիջապես նրան տեղեկացրեց իր կասկածի մասին.

— Խնդրում եմ խոսես հետը:

Այդ օրը Լևոնը ոչինչ չպատասխանեց. «Ավելի լավ է հետո, երբ բոլորը-բոլորը պատրաստ կլինի»: Այդպես վճռեց նա և մի քանի օր անց ծնողների ու քրոջ՝ Կարինեի առջև դրեց իրենց տան, առագաստանավի, հայկական եկեղեցու մանրօրինակները:

— Ապրե՛ս, տղա՛ս,— ասաց հայրը, և կատակով ավելացրեց.— Այժմ ես իմացա, թե ուր են անհետանում մեր լուցկիները:

Այո՛, Լևոնը այդ ամենը պատրաստում էր լուցկու հատիկներից:

Շուտով նա կավարտի Երևանի № 71 դպրոցը և կսովորի պոլիտեխնիկական ինստիտուտի ճարտարապետական բաժնում: Այստեղ արդեն Լևոն Ալեքսանյանը կտիրապետի իսկական տներ նախագծելու և կառուցելու արվեստին:

ՌԱՅԻՍԱ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# ԻՆՁԻ ՀԱՄԱՐ ԷՐ ՆՈՐՈՒՅԹԸ

Սպրինգֆիլդ քաղաքում, որտեղ այդ ժամանակ ապրել է Լինկոլնը, մի անմաքուր ձեռքի տեր հարուստ իր տունը զարդարեց շանթարգելով, որը նորույթ էր այն ժամանակների համար:

Հատուցելով այդ մարդուն նենգության համար, իր ելույթներից մեկում Լինկոլնը, հավաքված աղքատների քրքիջի տակ, նկատեց.



— Զուր չէ, որ այդ աստվածավախ պարոնը իր տան ձեղնահարկին շանթարգել է դրել. չէ՞ որ «Աստվածաշնչում» ասված է. «Աստված շանթահար է անում գողերին»:

# ՈՎ, ՈՒՐ Է ՊԱՏՐԱՍՏՎՈՒՄ

Այս պատահել է այն ժամանակ, երբ հասարակ ժողովրդի զավակ, մարդկային իրավունքների պաշտպան Աբրահամ Լինկոլնը երիտասարդ քաղաքական գործիչ էր և առաջին անգամ նրա թեկնածությունն առաջադրվել էր ԱՄՆ-ի կոնգրեսում:

Լինկոլնի հակառակորդն էր մի հոգևորական՝ հայտնի հարպիկ քարոզիչ: Մի կիրակի օր Լինկոլնը եկավ լսելու հայր-քաղաքագետի քարոզը: Սուրբ հայրն այդ օրը գերազանցեց ինքն իրեն: Քարոզի վերջում նա բացականչեց.

— Զավակնե՛րս: Ես խնդրում եմ կանգնեն բոլոր նրանք, ովքեր չեն ուզում այնպիսի տհաճ տեղ ընկնել, ինչպիսին է դժոխքը:

Ծառերը կանգնեցին:

— Իսկ այժմ թող կանգնեն նրանք, ովքեր ուզում են դրա՛խտ ընկնել,—աղաղակեց հոգևորականը:

Բոլորը կանգնեցին, բացի Լինկոլնից:

— Հետաքրքիր է, ո՞ւր եք պատրաստվում ընկ-




նելու դուք, մի՛ստր Լինկոլն,— թունոտ հարցրեց հոգևորականը:

— Ի տարբերություն ձեզ,— անխռով պատասխանեց ապագա պրեզիդենտը,— ես պատրաստվում եմ կոնգրես ընկնել:

## ԳՈՒՈՉՈՒԹՅԱՆ Վ՝ՆԱՍՆԵՐԸ

Ամերիկյան Ջորջիա նահանգի բնակիչ Չարլզ Կանդլերն իր գործի անզուգական վարպետն էր: Նա այնպիսի վարպետությամբ էր կեղծում տասը դոլլարանոց թղթադրամները, որ երկար ժամանակ չէին կարողանում նրան բռնել:



Եվ, այնուամենայնիվ, ոստիկանությունը հեշտությամբ գտավ նրա հետքը:

Ո՛չ, տեխնիկական վրիպում չկար, թուղթը, ներկը ու պատճենահանումը առաջնակարգ էին: Պարզապես նրան հաժակել էր փառամոլությունը: Ջորջ Վաշինգտոնի դիմանկարի փոխարեն նա սկսել էր թղթադրամների վրա տպել իր պատկերը:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 11 նոյեմբեր 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ*



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06768: Պատվեր 1802: Տպաքանակ՝ 73806: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 12/XI 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9. Տեղյան փ. № 91:





ԳԻՆԸ 10 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



ԽԱՉԻԿ ԱՂԱՋԱՆՅԱՆ, 14 տ.
Կիրովական



ԷԴՎԱՐԴ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 13 տ.
Ջարենցավան



ՄԱՐԳԱՐԻՏ ՊԵՏՐՈՍՅԱՆ
Ջարենցավան, 5-րդ դաս. աշ.



ՀԱԲԵԹ ԱՂԱՋԱՆՅԱՆ, 11 տ.
Երևան



ՄԱՐԻՆԵ ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ
Շամշադինի Բերդ, 5-րդ դաս. աշ.



ԱՆՈՒՇ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 13 տ.
Թալինի շրջան. գյուղ Կաթնաղբյուր